Բ. ՌԱԴԻՆ

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐՆ

*և*

# ՊԵՏԱԿԱՆ ՁԵՒԵՐԸ

Գինն է 5 կոպ.



Թարգմ. Մ.

*ԹԻՖԼԻՍ*
Տպարան «ՀԵՐՄԷՍ» Ընկ. Մադաթեան փող. №15
1906 *(167)*

705

Բ. ՐԱԳԻՆ

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐՆ

ԵՒ

# ՊԵՏԱԿԱՆ ՁԵՒԵՐԸ

29р.





Թարգմ. Մ.



ԹԻՖԼԻՍ
Տպարան «ՀԵՐՄԷՍ» Ընկ. Մադաթեանի փող. № 15
1906 (167)

I

Կար ժամանակ, երբ մեզանում (Ռուսաստանում) ժողովուրդը շատ քիչ էր հետաքրքրւում քաղաքական հարցերով։ Նա լուռ ու մունջ տանում էր այն բոլորը, ինչ-որ անհամբոյր կեանքը բերում էր իրան։ Նա անտրտունջ հպատակւում էր իշխանաւորների բոլոր պահանջներին, մխիթարւելով այն աշխարհում հարիւրապատիկ վարձատրւելու յոյսով։ Բազմադարեան ընտելութիւնը, համարեա կատարեալ տգիտութիւնը, սոսկալի և անելանելի խեղճութիւնը սպանում էր նրա մէջ եղած կենդանի ոգին, ոչնչացնում էր նրա բոլոր ձգտումները դէպի լաւագոյն կեանքը։ Հասկանալի է, որ այն ժամանակ ժողովուրդը չէր կարող մեծ հետաքրքրութիւն ցոյց տալ դէպի հասարակական հարցերը։ Սակայն այդ անցեալը արդէն վաղուց և անդառնալի կերպով գլորւել է դէպի յաւիտենականութիւն։ Այժմ ազգաբնակութեան լայն խաւերը զարթնել են գիտակցական կեանք վարելու համար և աշխատում են ինքնուրոյն կերպով ըմբռնել ներկայ պատմական մօմէնտի բարդ խնդիրները։ Իրանց շահերը միահամուռ ոյժերով պաշտպանելու համար նրանք արդէն խմբւում են զանազան քաղաքական կուսակցութիւնների շուրջը։ Բայց դա այնքան էլ հեշտ չէ։ Որպէսզի կարելի լինի գի-

տակցաբար և անսխալ կերպով ընտրել այն կուսակցութիւնը, որը իսկապէս պաշտպանում է յարող անհատի դասակարգի շահերը, պէտք է լաւ գիտենալ, թէ ինչ է պահանջում ամեն մի կուսակցութիւն, որոնք են նրա մօտալուտ խնդիրներն և հեռաւոր նպատակները։ Պէտք է լաւ գիտենալ, թէ ազգաբնակութեան ո՛ր խաւերի վրայ է յենւում կուսակցութիւնը, երբ իրան այս կամ այն նպատակ է դնում, և ո՛ր դասակարգի շահերն է պաշտպանում նա իր կռւի մէջ։ Քաղաքական կուսակցութիւնները, նամանաւանդ բուրժուական կուսակցութիւնները, յաճախ զարդարւում են գեղեցիկ ֆրազներով և յայտարարութիւններով ու դիտմամբ հրապուրիչ հմայքներ են ցուցահանում, որպէսզի անգիտակից մարդկանց կարողանան իրանց կողմը գրաւել, և շատ անգամ նրանց յաջողւում է այդ խաղը, մանաւանդ ժողովրդի մութ խաւերի հետ։ Ամեն մի կուսակցութիւն շահագրգռուած է, որ իր կազմի մէջ որքան կարելի է շատ մարդ ունենայ։ Իսկ որովհետև ազգաբնակութեան մեծամասնութիւնը կազմում են աշխատաւոր դասակարգերը, ուստի բնական է, որ կուսակցութիւնները առանձնապէս աշխատում են նրանց դուր գալ, յոյս դնելով նրանց տգիտութեան վրայ։ Յաճախ նրանք իրանց դրօշակի վրայ գրում են ժողովրդի մէջ ընդհանրացած պահանջներ, բայց միայն նրա համար, որ հէնց դէպքը բերած տեղը դաւաճանեն և՛ դրօշակին և իրանց խոստումներին։ Բուրժուական կուսակցութիւնները այլ կերպ չեն էլ կարող վարուել։ Ախր, ունևոր դասակարգերը ազգաբնակութեան չնչին մասն են կազմում և, երբ առանձնացած են նրանք ու մենմենակ կազմակերպուած, չեն կարող երկրի բաղդի վրայ ազդող մի պատկառելի ոյժ ներկայացնել։ Հարուստ դասակարգի ամբողջ ոյժը կայանում է նրանում, որ

թէ քաղաքի և թէ գիւղի չքաւորութիւնից դուրս եկած միլիօնաւոր բանւորութիւնը կախումն ունի նրանից և, քիչ գիտակցող ու քիչ կազմակերպւած լինելու պատճառով, հպատակւում է նրա բոլոր պահանջներին։ Վերջապէս, ունևոր դասակարգի տրամադրութեան տակ են գիտութիւնը, լուսաւորութիւնը, քաղաքական մեծ փորձառութիւնը, որոնց շնորհիւ նա կարողանում է հեշտութեամբ խաբել՝ սևը սպիտակից հազիւ ջոկող բանւորի և անգրագէտ գիւղացու։ Եւրոպայի բոլոր երկրներում նա լայն չափով օգտւել է և դեռ ևս օգտւում է վերոյիշեալ առաւելութիւններից։ Բոլորովին այլ է այն կուսակցութիւնների բանը, որոնց նպատակն է պաշտպանել ժողովրդական ստոր խաւերի, չունևորների, մի խօսքով պրոլետարիատի շահերը։ Նրանք արդէն կարիք չունեն խաբելու կամ ժողովրդական բարեկամների շորեր հագնելու, որպէսզի կարողանան շատ կողմնակիցներ գրաւել դէպի իրանց շարքերը։ Նրանք շահագրգռւած չեն ժողովրդի տգիտութեան և անգիտակցութեան մէջ, այլ ընդհակառակը, հէնց իրանք են աշխատում, որ ժողովրդի մէջ լայն կերպով տարածւեն քաղաքական գիտելիքներ և լայն չափերով զարգանայ ինքնուրոյնութեան և ինքնագործութեան ոգին։ Հակառակ բուրժուական կուսակցութիւնների, որոնք ճգնում են ապացուցանել, թէ իրանք արտայայտիչ են ամբողջ ազգի շահերի, բանւորական կուսակցութիւնը շարունակ ցոյց է տալիս, որ ազգաբնակութեան մէջ գոյութիւն չունեն բոլոր դասակարգերի շահեր, որ կապիտալիստների և բանւորների, հողատէրերի և գիւղական չքաւորութեան շահերը խստիւ հակադիր են և ոչ մի դէպքում չեն կարող միևնոյն կուսակցութեան ձեռքով պաշտպանւել, որ պերճախօս բուրժուաների բոլոր խօսակցութիւնները միայն ու միայն կեղծ խօսքեր են և

գեղեցիկ ֆրազներ, որպէսզի բանուոր դասակարգը հանեն իր միակ ուղիղ ճանապարհից, որ է կազմակերպուել իբրև անկախ կուսակցութիւն։

Հասկանալի է, որ քաղաքական կեանքի այս կամ այն հարցը վճռելիս, իւրաքանչիւր կուսակցութիւն իւր լուսաբանութիւն է տալիս։ Այդ լուսաբանութիւնը կախուած է այն դասակարգի շահերից, որի պաշտպան հանդիսանում է կուսակցութիւնը։ Բայց արի տես, որ իւրաքանչիւր կուսակցութիւն աշխատում է ապացուցանել, որ մենակ ինքն է արտայայտում ժողովրդական կարիքները և այդ կարիքներին ամենալաւ վճիռ տուողը ինքն է ու ինքը։ Ուղղակի հաւատալ այդ հաւաստիացումներին, ի հարկէ, չէ կարելի։ Պէտք է ամեն անգամ մանրամասնօրէն քննել, թէ արդեօք այս և ոչ թէ մի ուրիշ պահանջն է, այս և ոչ թէ մի ուրիշ ծրագիրն է համապատասխանում աշխատաւոր ժողովրդի շահերին։ Այս գրքոյկում մենք կանգ կառնենք մի շատ կարևոր հարցի վրայ, որին զանազան կուսակցութիւններ զանազան պատասխան են տալիս։ Տեսնենք, թէ նրանցից որն է արդար ու ճշմարիտ, ով է տալիս մի այնպիսի պատասխան, որ ամենաճիշտ կերպով բաւարարութիւն տայ ժողովրդական ստւար խաւերի շահերին։ Հարցը հետևեալն է՝ ո՞րոնք են պետական կեանքի ամենալաւ ձևերը, պետական կազմի ո՞ր հիմունքների համար պէտք է մարտնչել։ Պահպանողական կուսակցութիւնը, որ բաղկացած է չինովնիկներից և խոշոր կալուածատէր-ազնուականներից, պաշտպանում է միահեծան միապետութիւնն, իբրև միակ ձև, որ համապատասխանում է ռուսաց կեանքի աւանդական ըսկըզբունքներին և բղխում է ռուս ժողովրդի ամբողջ հոգեկան կազմուածքից։ Ամեն տեսակ ազատամիտ կուսակցութիւն, որ առհասարակ բաղկացած է լինում ու-

նեոր դասակարգերի—արդիւնագործական և գիւղական բուրժուազիայի—կողմնակիցներից, պնդում է, որ կառավարութեան ամենանպատակայարմար ձևը սահմանադրական միապետութիւնն է, այսինքն՝ ժողովրդական ներկայացուցչութիւնով սահմանափակւած միապետութիւնը։ Բանւորական կուսակցութիւնն էլ իր կողմից յայտարարում է, որ աշխատաւոր ժողովրդի լայն խաւերի շահերը պահանջում են ձեռք բերել մի այնպիսի քաղաքական կազմ, որտեղ պետութեան ամբողջ իշխանութիւնը անբաժան գտնւէր ամբողջ ժողովրդի ձեռքում,—ռամկավարական հասարակապետութիւնն է այդպիսի կազմը։ Որպէսզի պարզ ու հասկանալի լինի, թէ որն է նրանցից արդարը, մօտից տեսնենք, թէ ինչ է ներկայացնում մեր թւած կառավարութեան ձևերից իւրաքանչիւրը և ում շահերի պաշտպան են հանդիսանում նրանք։

## II

Միահեծան միապետութիւն է այն պետական կազմը, որտեղ ամբողջ իշխանութիւնը կենտրոնացած է ժառանգական միապետի ձեռքում։ Դեռ ԺԸ դարում կառավարութեան այս ձևը տիրապետում էր Եւրոպայի բոլոր պետութիւնների մէջ, բայց ԺԸ դարի վերջերին և ԺԹ դարի առաջին կիսին տեղի ունեցած յեղափոխական փոթորիկներից յետոյ, նա մնաց միայն Ռուսաստանում և Թիւրքիայում։ Միահեծան միապետութիւնների մէջ պետութիւնը և միապետի անձնաւորութիւնը իրար են ձուլւած, միմիայն նա, միապետն է հանդէս գալիս ամբողջ ազգի անունից, անսահման կերպով տնօրինում նրա բաղդը, պատերազմ յայտարարում, խաղաղութեան դաշն կապում, օրէնքներ հաս-

տատում, հարկեր դնում և այլն և այլն։ Թէ օրէնսդրական, թէ կատարողական իշխանութիւնն նրանից է բղխում։ Նա կատարելապէս ազատ է իր գործողութիւնների մէջ, նրա կամքը օրէնք է բոլոր հպատակների համար։ Ի հարկէ, միապետը որոշ դէպքերում— կամ, եթէ ցանկանում է, շարունակաբար—կարող է ազգաբնակութեան այս կամ այն խաւերից խորհուրդ հարցնել. բայց ոչ ոք նրան չէ կարող պարտաւորացնել, որ համաձայնի իր յայտնած կարծիքի հետ։

Ի հարկէ, ոչ մի միապետ չէ կարող ինքնուրոյն կերպով վճռել ժամանակակից պետական կեանքի անթիւ ու անհամար խնդիրները։ Հին ժամանակներում, երբ գոյութիւն չունէին հիմիկուայ նման մեծ պետութիւններ, երբ առանձին-առանձին ցեղեր ապրում էին անկախ և առանձնացած, իշխանը կամ ցեղապետը կարող էր անձամբ միջամտել իր բոլոր ցեղակիցների գործերում։ Նա և՛ կառավարում էր, և՛ դատում, և՛ զինավարժութիւն սովորեցնում, և, հարևան ցեղերի հետ պատերազմելիս, գլխաւոր առաջնորդի դեր կատարում։ Այժմեան պետութիւնների մէջ, որտեղ ահագին տարածութեան վրայ ապրում են տասնեակ միլիոնաւոր բնակիչներ, ի հարկէ, չէ կարող նոյնը լինել։ Միապետը իր կամքի անմիջական կատարումը յանձնում է մերձաւոր չինովնիկների, և իսկապէս սրանք են որ կառավարում են երկիրը։ Այսպէս, օրինակի համար, մեզանում (Ռուսաստանում) օրէնքներ հրատարակելու համար աւագ չինովնիկներից կազմւում է Պետական Խորհուրդ։ Այդ Խորհրդի անդամները նշանակւում են միապետի ձեռքով։ Նրանք քննում են բոլոր օրինագծերը, պետական ելևմտի նախահաշիւը և ներկայացնում են կայսրին ի հաստատութիւն։ Նրանց որոշումները պարտադիր չեն, որովհետև, եթէ կայսրը չը հա-

մաձայնի նրանց կարծիքի հետ, այդ դէպքում օրինագիծը օրէնք չի դառնայ։ Իրօք, ի հարկէ, միապետը համաձայնում է չինօվնիկներից կազմւած օրէնսդրական հիմնարկութեան կարծիքի հետ, որովհետև նա հնարաւորութիւն չունի անձամբ մտնել հրատարակւելիք օրէնքների մանրամասների մէջ, հնարաւորութիւն չունի անձամբ քննել բոլոր առաջարկւող օրինագծերը։ Միապետին մնում է միմիայն ստորագրել։ Այդպիսի միապետի ինքնակալութիւնը անպայման կերպով փոխւում է չինօվնիկների ինքնիշխանութեան։ Վերջինս առանձնապէս արտայայտւում է կատարողական իշխանութեան մէջ։ Չէ՞ որ, բացի օրէնքներ հրատարակելուց, միապետը պէտք է հոգս քաշի և նրանց կատարման, իրագործման համար։ Եւ նա կատարողական իշխանութեան գլուխ է կարգում մինիստրների և ուրիշ չինօվնիկների, որոնք պարտաւոր են կառավարել երկիրը հաստատւած օրէնքների հիման վրայ։ Այդ մինիստրները նշանակում են աւելի ստոր չինօվնիկներ, վերջիններս՝ իրանցից փոքր չինօվնիկներ և այլն, կազմւում է չինօվնիկների մի ահագին բանակ, որոնք իրանց իշխանութիւնը ստացել են միապետից և գործում են նրա անունից։ Չինօվնիկների այդ բանակը կոչւում է բիւրօկրատիա։ Միապետը չէ կարող անձամբ հսկել չինօվնիկներին, և դրա համար նա նշանակում է նոր չինօվնիկներ, առաջին չինօվնիկներին վերահասութիւն անելու համար, և այսպէս անվերջ։ Իսկապէս, ի հարկէ, ոչ մի վերահասութիւն չը կայ, և իւրաքանչիւր չինօվնիկ իր խելքին փչածն է անում։ Եթէ որևէ չինօվնիկ խախտում է օրէնքը, այդ դէպքում արդարադատութիւն պէտք է սպասել վերստին չինօվնիկներից, որովհետև միահեծանութեան մէջ (աբսօլիւտիզմ) դատական իշխանութիւնն էլ գտնւում է նրանց

ձեռքում։ Մի խօսքով միահեծան միապետութեան մէջ չինովնիկը ամէն ինչ է. նա է որ գրում է օրէնքները, նա է որ գործադրում է կեանքի մէջ, հէնց նա էլ պատժում է իր հրատարակած օրէնքների դէմ մեղանչողներին։ Այսպիսի կազմը անպայման պէտք է փոխուի բիւրօկրատիայի ամենակալութեան, և իրօք նա փոխւում էլ է ամէն տեղ։

Իսկ ժողովրդի իրաւունքների մասին միահեծան միապետութեան մէջ խօսք էլ չի կարող լինել։ Բացի այն հանգամանքից, որ ժողովուրդը կատարելապէս հեռացնւում է օրէնսդրութեան և կառավարութեան մէջ մասնակցութիւն ունենալուց, նա միահեծանութեան (աբսօլիւտիզմ) մէջ չէ վայելում և այնպիսի տարրական քաղաքացիական իրաւունքներ, ինչպէս են՝ խօսքի, մամուլի, ժողովների, ընկերակցութիւնների ազատութիւնները, անձի անձեռնմխելիութիւնը և այլն։ Դա էլ շատ հասկանալի է։ Ախր, եթէ գոյութիւն ունենար խօսքի և մամուլի ազատութիւնը, կըմերկանար չինովնիկների ինքնակալութիւնը, անպայման բոլորի առաջ կըբացուէր բիւրօկրատիայի տիրապետութեան անպէտքութիւնը, և ափ-աշկարայ կերպով կըքարոզուէր լաւագոյն կեանքի անհրաժեշտութեան մասին, իսկ այս բոլորը վերջ ի վերջոյ կըտանէր դէպի ոչնչացում չինովնիկների անկօնտրօլ իշխանութեան։ Եթէ ժողովուրդը իր կարիքների մասին մտածելու և ամէն տեսակ ընկերակցութիւններ կազմելու համար ազատ կերպով հաւաքուելու իրաւունքն ունենար, շատ շուտով ամբողջ երկիրը կըծածկուէր ընկերակցութիւնների խիտ ցանցով, ընկերակցութիւնների, որոնց նպատակը կըլինէր բարելաւել ժողովուրդի վիճակը և, հետևաբար, ամենից առաջ, ոչնչացնել մեծ ու փոքր չինովնիկների անկօնտրօլ կառավարումը։ Նոյնը պէտք է ասել և

միւս ազատութիւնների մասին։ Բիւրօկրատիան այդ շատ լաւ գիտէ և այդ պատճառով ամբողջ ոյժով կռւում է այն բոլոր փորձերի դէմ, որ ժողովուրդը անում է իր իրաւունքները ընդլայնելու համար։

Ո՞ւմն է ձեռնտու այս քաղաքական կազմը։

Ամենից առաջ հասկանալի է, որ ինքը պետութեան գլուխն է, որ շահագրգռւած է ամբողջ իշխանութիւնը իր ձեռքում պահելու և երկրի բաղդը անկօնտրօլ կերպով տնօրինելու մէջ. Նրանից յետոյ չինովնիկութիւնը, բիւրօկրատիան է միահեծանութեան պաշտպան հանդիսանում։ Ինչպէս վերը ասւած էր, իսկապէս նա է երկրի տէրը, անպատիժ անում է, ինչ-որ կամենում է, անարգել ծախսում է ժողովրդական փողերը, սիստեմատիքաբար թալանում է գանձարանը, մի խօսքով կատարեալ տէր է։ Միահեծանութեան ժամանակ իշխանաւորները ամենազօր են և ամենակարող, իսկ ժողովուրդը ընկճւած է, տգէտ և ստրկօրէն ճնշւած։ Ո՞վ կուզենար զրկւել այսպիսի արտօնեալ դրութիւնից։

Միահեծանութեան կողմնակից են և խոշոր հողատէրերը, ազնուականները, խոշոր փողատէրերը և միւս սրանց նման աղաներ, որոնք կարող են ամեն տեսակ կազմում, մանաւանդ պրիկազների կազմում, լաւ ապրել։ Սրանք են, որ իրանց ձեռքում պահում են ամենազօր չինովնիկներին։ Կաշառքների միջոցով անել են տալիս, ինչ-որ ուզում են։ Ձեռնտու պայմաններով իրանց փողերը փոխ են տալիս գանձարանին, թոյլտւութիւն են ստանում երկրի համար կործանիչ, բայց իրանց համար շահաւէտ ձեռնարկութիւնների համար, պետութիւնը մղում-տանում են դէպի զանազան աւանտիւրաներ (ինչպէս կօրէական կօնցէսսիան էր, որ կործանիչ ու խայտառակ պատերազմով վերջացաւ). վերցնում են արքունական կապալներ (փոդրաթներ) և

*աշխատում են նախօրօք կաշառուած չինովնիկների հսկողութեան ներքոյ և այլն։ Ի հարկէ, այդպիսի պարոններին ձեռնտու է ամենակալ բիւրօրատիայի պահպանումը, և նրանք վերջինիս հետ միասին ձգտում են ինչ գնով էլ լինի պահպանել գոյութիւն ունեցող կազմը։ Հասկանալի է, որ այսպիսի կառավարութեան հետևանքը լինում է՝ երկրի կատարեալ քայքայում, կամայականութեան և բռնութեան տիրապետութիւն, բացակայութիւն դէպի վաղուան օրը ունեցած վստահութեան, կատարեալ անշարժութիւն բոլոր գործերի մէջ, ազգաբնակութեան ամենատարրական կարիքների անտես անելը և նրա մէջ երևացած ինքնագործութեան բոլոր արտայայտութիւնների խեղդումն։ Սրանից, ի հարկէ, նախ և առաջ կեղեքւում են ազգաբնակութեան չունևոր դասակարգերը, որովհետև հարուստն և ունևորը միշտ կարող է մի կերպ յարմարութիւն ստեղծել և միջոցներ ձեռք բերել իր կարիքներին բաւարարութիւն տալու համար, այլ և օգնութիւն ստանալ կառավարութիւնից բանւորներին փառաւորապէս շահագործելու և ի հաշիւ նրանց հարստանալու։*

*Ժողովրդին բոլոր քաղաքական իրաւունքներից զրկելով, և բանւորներից հիւթեր քամելու ժամանակ ունևոր դասակարգերին օգնելով, միահեծանութիւնը բանւորներին հնարաւորութիւն չէ տալիս իրանց իրաւունքները պաշտպանելու, և խստիւ պատժում է ամեն մի փորձ, որ բանւորութիւնը անում է դասակարգային կռիւ մղելու համար։ Այսպիսի կազմը, ի հարկէ, ձեռնտու չէ ստոր խաւերին, և բանւոր դասակարգը պէտք է վճռականապէս մաքառէ նրա դէմ։*

## III

*Սահմանադրական միապետութիւնը պետական*

կազմակերպութեան ամենատարածուած ձևերից մէկն է արևմտեան Եւրոպայում։ Նա անցողական մի աստիճան է միահեծանութիւնից (ռամկավարութեան ըսկըզբունքի բացասումն) դէպի ռամկավարական հասարակապետութիւնը (իսկական ռամկավարութիւն)։ Պետական իշխանութիւնն այստեղ բաժանուած է միապետի և ժողովրդական ներկայացուցչութեան միջև։ Թէ իշխանութեան որ մասն է մնում առաջնի ձեռքին և որը անցնում ժողովրդի ձեռքը, կախուած է այն հանգամանքից, թէ որքան յաջող է եղել ժողովրդի քաղաքական ազատութեան համար մղուած կռիւը։ Այսպէս, օրինակի համար, Գերմանիայում և Աւստրիայում կայսրները պահպանել են այնպիսի մի իշխանութիւն, որ շատ անգամ կառավարում են առանց ժողովրդական ներկայացուցիչների գիտութեան և կամ նոյն-իսկ ընդդէմ նրանց կամքի, այն ինչ Անգլիայում, Բէլգիայում, որտեղ կառավարութեան ձևը նոյնպէս սահմանադրական է, բարձրագոյն իշխանութիւնը կենտրոնացած է պարլամենտի ձեռքում, իսկ թագաւորը միայն հնազանդօրէն ստորագրում է իրան առաջարկւող օրէնքները։ Խօսելով սահմանադրական միապետութեան մասին, մենք չենք շօշափելու այն խնդիրը, թէ իւրաքանչիւր երկրում ի՞նչ ձևերով է արտայայտւում նա, այլ կանգ կը առնենք միայն կառավարութեան այդ ձևին յատուկ յատկանիշների վրայ։

Իւրաքանչիւր պետութեան մէջ իշխանութիւնը բաժանուած է երեք մասի՝ օրէնսդրական, կատարողական և դատական։ Օրէնսդրական իշխանութիւնը, ինչպէս ցոյց է տալիս ինքը խօսքը, կայանում է ամբողջ ազգաբնակութեան և պետական բոլոր հիմնարկութիւնների համար պարտադիր կանոններ և օրէնքներ մշակելու մէջ։ Իսկապէս նա է վճռում երկրի

բաղդը, որի ձեռքին գտնւում է օրէնսդրական իշխանութիւնը, որովհետեւ նա է որոշում ազգաբնակութեան առանձին անհատների կամ դասակարգերի իրաւունքներն ու պարտականութիւնները, նշանակում է հարկեր, բաշխում է եկամուտներ, որոշում է պաշտօնեաների իշխանութեան սահմանները և այլն։ Բայց բաւական չէ օրէնքներ մշակել, նրանց պէտք է և իրագործել կեանքի մէջ։ Այն իշխանութիւնը, որ ի կատար է ածում օրէնքները և հսկում նրանց ճշգրիտ կատարման վրայ, կոչւում է կատարողական իշխանութիւն։ Այս իշխանութիւնը պէտք է խստիւ անջատւած լի օրէնսդրականից։ Օրինակի համար, երբէք չէ կարելի հարկեր նշանակելը և հաւաքելը միևնոյն մարդկանց յանձնել։ Հարկահանը միայն օրէնսդրի կամակատարն է և երբէք չէ կարող այդ կամքը փոխել կամ կամայականօրէն բացատրել։ Միահեծան միապետութեան մէջ, որտեղ թէ օրէնսդրական և թէ կատարողական իշխանութիւնները կենտրոնացած են միապետի ձեռքում, իսկ իրապէս գտնւում չինովնիկների ձեռքին, վերջիններս որև է օրէնքի կատարման ժամանակ հանդիպած առաջին անյարմարութեան դէպքում կամ փոխում են նրան, քմահաճօրէն բացատրելով կամ ուղղակի ոչնչացնում են շրջաբերական կարգադրութեամբ։ Կատարողական իշխանութիւնն իր գործողութիւնների մէջ պէտք է լիովին ստորադրւի օրէնսդրական իշխանութեան որոշումներին։ Միանգամայն առանձին պէտք է լինի և դատական իշխանութիւնը, որ պատժում է օրինազանցութեան համար։ Նա պէտք է կատարելապէս անկախ լինի և բաւականաչափ հեղինակութիւն վայելէ ազգաբնակութեան աչքում։ Ռամկավարական երկիրներում՝ այսինքն այն երկիրներում, որտեղ ինքը ժողովուրդն է վճռում բո-

լոր պետական գործերը՝ իշխանութեան այս 3 տեսակները բղխում են մի աղբիւրից—ժողովրդից և տարբերւում են միայն նրանով, որ ի կատար են ածւում առանձին-առանձին հիմնարկութիւնների միջոցով։ Օրէնսդրութիւնը գտնւում է կամ անմիջապէս ժողովրդի ձեռքում կամ նրա ներկայացուցիչների ձեռքին պարլամենտում. կատարողական իշխանութիւնը գտնւում է պարլամենտից ընտրւած և պարլամենտի առաջ պատասխանատու մինիստրութեան ձեռքում, իսկ դատական իշխանութիւնը՝ ժողովրդից ընտրւած երդւեալների անկախ դատարանի ձեռքում։

Տեսնենք, թէ ինչպէս են բաժանւում այս իշխանութիւնները սահմանադրական միապետութեան մէջ։ Նախ և առաջ դիմենք օրէնսդրական իշխանութեանը։ Բոլոր սահմանադրութիւնների մտքով, իւրաքանչիւր օրինագիծ օրէնք է դառնում միայն այն ժամանակ, երբ ընդունւում է ժողովրդական ներկայացուչիների օրէնսդրական ժողովարանի (պարլամենտի) կողմից և երբ ստորագրւած է միապետի ձեռքով։ Դա նշանակում է, որ եթէ ժողովրդական ներկայացուցիչները անհրաժեշտ են, գտնում փոխել մի որև է հին օրէնք, ոչնչացնել հարկեր, մեծացնել ազգաբնակութեան այս կամ այն խաւերի իրաւունքները և այլն, իսկ միապետը նրանց հետ համաձայն չէ, այն ժամանակ ամեն ինչ մնում է առաջւայ պէս։ Միապետի ձայնը հաւասարւում է ամբողջ ժողովրդի ձայնին, և ամբողջ օրէնսդրական իշխանութիւնը բաժանւում է երկու մասի՝ կէսը տրւում է ժողովրդին, իսկ կէսը մնում է միապետին։ Բայց շատ երկրներում, բացի ժողովրդական ներկայացուցիչների պալատից, կայ և մի երկրորդ պալատ, որ կազմւած է ունեւոր դասակարգերից՝ տոհմական ազնւականներից, կապիտալիստներից և կալ-

ւածատէրերից։ Այս երկրորդ պալատը ունի նոյն իշխանութիւնը, ինչ-որ առաջինը, այսինքն առանց նրա համաձայնութեան ոչ մի օրէնք չէ կարող ընդունուել։ Այսպիսով, իշխանութիւնը արդէն ոչ թէ երկու, այլ երեք մասի է բաժանւում՝ $^{1}/_{3}$ միապետին, մէկ երրորդը ունևոր դասակարգին և միայն մէկ երրորդը ամբողջ ժողովրդին (որտեղ ներկայացրուած են լինում և ունևոր դասակարգերը)։ Այսպիսի պարագաներում, ի հարկէ, շատ թոյլ է լինում ժողովրդի ազդեցութիւնը օրէնսդրութեան վրայ, մինչդեռ միապետի և ունևոր դասակարգերի ազդեցութիւնը ուժեղ է արտայայտւում։ Եթէ ուշադրութեան առնենք և այն հանգամանքը, որ կառավարութիւնը և ունևորները մեծ մասամբ ջերմ բարեկամներ են, ապա հասկանալի կըլինի, որ այդպիսի կազմում օրէնքներ հաստատողը իսկապէս ոչ թէ ժողովուրդն է, այլ նրանք, որոնք ամենից քիչ կարող են ժողովրդական շահերի ներկայացուցիչ հանդիսանալ, դա թագի դաշնակցութիւն է բուրժուազիայի հետ։ Մի քանի սահմանադրական երկիրներում ունևոր դասակարգերը աւելի ևս առաջ են գնում՝ նրանք հասել են մի այնպիսի վիճակի, ուր ժողովրդական ներկայացուցիչների պալատը ընտրւում է ոչ թէ ամբողջ ժողովրդի ձեռքով ընդհանուր, հաւասար, ուղղակի և գաղտնի ընտրողական իրաւունքի հիման վրայ, այլ միայն նրանց ձեռքով, որոնք ունեն կայքային ցենզ, այսինքն մի որոշ սեփականութիւն։ Սրա հետևանքը լինում է այն, որ այդպիսի երկրներում ստորին պալատն էլ (սովորաբար այսպէս է կոչւում ժողովրդական ներկայացուցիչների պալատը) բացառապէս կազմուած է լինում ունևոր դասակարգերի ներկայացուցիչներից։ Այսպիսի հիմքերի վրայ են կառուցուած և մեր Պետական Դումայի ընտրութիւնները՝

այնտեղ ներկայացուցիչ կարող են ուղարկել միայն տանտէրերը, վաճառականները, գործարանատէրերը, հարուստ վարձաբնակները (կենողները) և գիւղական վոլօստի ժողովները, վերջինները կազմւում են հողատէրերից, ընտրուած մէկ-մէկ իւրաքանչիւր տասն տնից։ Կատարելապէս զրկուած են մասնակցութեան իրաւունքից (և այն էլ մի այնպիսի ոչ-մի իրաւունք չունեցող «օրինախորհրդակցական» հիմնարկութեան մէջ, ինչպէս մեր Դուման է) բոլոր ֆաբրիկային և գիւղական բանւորներ, մանր քաղաքացիութեան մեծ մասը, ժողովրդի սրտին մօտիկ և աշխատաւոր ինտելլիգենցիան՝ զեմստվօյական ուսուցիչներ, բժիշկներ, ստատիստիքներ և այլն, սեփական կալուած չունեցող բոլոր չափահաս գիւղացիք, գիւղական տանտէրերի $^{6}/_{10}$ մասը և շատ ուրիշները։ Հասկանալի է, որ այսպիսի Դուման միայն ունևոր դասակարգերի շահերի արտայայտիչը կարող է լինել։ Աւստրիայի և Պրուսիայի ընտրութիւնները սարքուած են այնպիսի հիմքերի վրայ, որ ժողովրդի չնչին մասը նոյնքան պատգամաւոր է ուղարկում, որքան և ստւար մեծամասնութիւնը։ Այսպէս, օրինակի համար, Պրուսիայում ազգաբնակութիւնը բաժանւում է խմբերի՝ առաջին խմբի մէջ մտնում է ազգաբնակութեան $4^{0}/_{0}$-ը, ամենահարուստ և ականաւոր մարդկանցից, երկրորդի մէջ՝ 12 $^{0}/_{0}$-ը, սովորական հարուստներից, վերջապէս երրորդի մէջ՝ մնացած ազգաբնակութիւնը—84 $^{0}/_{0}$-ը Այդ խմբերից իւրաքանչիւրը հաւասար թւով ներկայացուցիչներ ունի լանդտագում (այսպէս է կոչւում պարլամենտը Պրուսիայում)։ Այսպիսի սիստեմ է տիրում Սաքսօնիայում, Ռումինիայում և մի քանի ուրիշ երկիրներում։ Անկախ նոյն իսկ այն բանից, թէ ինչպէս է ստեղծւում ժողովրդական ներկայացուց-

չութիւնը, սահմանադրական միապետութիւնների մէջ, մանաւանդ, երբ գոյութիւն ունի երկրորդ պալատը (համարեա ամեն տեղ կայ), ժողովրդին պատկանում է օրէնսդրական իշխանութեան միայն երրորդ մասը, այն ինչ մնացած իշխանութիւնը կենդրոնացած է միապետի և բուրժուազիայի ձեռքում։

Բայց սահմանադրական երկիրներում միապետը յաճախ, յենւելով իրական ոյժի (նրա ձեռքին են և՛ զօրքը և՛ բիւրօկրատիական ամբողջ մեխանիզմը) և այն հանգամանքի վրայ, որ ինքն է պետութեան գերագոյն գլուխը, բոլորովին ինքնագլուխ կերպով վճռում է այն հարցերը, որոնց վերաբերմամբ նա յոյս չունի իր կառավարութեան համար ցանկալի պատասխան ստանալ պարլամենտից։ Այդպիսի բոլոր քայլերը ի հարկ է, բացատրւում են «ծայրայեղ կարիքով», «բացառիկ հանգամանքներով» և այլն։ Աւստրիայում օրինակի համար, գոյութիւն ունի սահմանադրութեան մի յօդւած (§ 14), որ ասում է, թէ ծայրայեղ անհրաժեշտութեան դէպքում, երբ հարկաւոր է այնպիսի կարգադրութիւններ անել, որոնց համար պահանջւում է պարլամենտի համաձայնութիւնը, իսկ պարլամենտը չէ գումարւում, ահա այդ ժամանակ կայսրը իրաւունք ունի ուկազ (հրագանգ) հանելու, մինիստրութեան պատասխանատւութեամբ, եթէ միայն այդպիսի հրագանգով փոփոխութեան չեն ենթարկւում սահմանադրութեան հիմնական դրութիւնները, երկար ժամանակով չէ ծանրաբեռնւում պետական գանձարանը, չէ վնասւում պետական հարստութիւնը։ Եւ որովհետև պարլամենտի գումարման և արձակման իրաւունքը պատկանում է կայսրին, ուստի, երբ դժւար է լինում ժողովրդական ներկայացուցիչներից թոյլտւութիւն ստանալ իր ցանկացած օրէնսդրական կարգադրութեան համար, այդ

դէպքում կայսրը կարող է արձակել նրանց և արտակարգ հրահանգով հասնել այն բանի, որին չէր կարելի պարլամենտի միջոցով հասնել։ Աւստրիական կառավարութիւնը շատ յաճախ է դիմել այդ միջոցին և բազմաթիւ հարցերում զէրօյի է հասցրել ժողովրդական ներկայացուցիչների իրաւունքը։ Իշխանութեան 2 աղբիւրի գոյութիւնը միշտ առաջ կը բերի իրաւունքների այսպիս խախտումն այս կամ այն կողմից. բայց, քանի որ սահմանադրական երկիրներում զօրքը և չինովնիկների բանակը գտնւում է միապետի ձեռքում և ունևոր դասակարգերն էլ նրան են աջակցում, հասկանալի է, որ միապետն է յաղթող հանդիսանում և ոչ թէ ժողովուրդը։ Ի հարկէ, սահմանադրական երկիրներում ժողովուրդը անհամեմատ շատ իրաւունքներ ունի, քան միահեծանութեան մէջ, բայց այդ իրաւունքները սաստիկ սահմանափակ են և նրանցից մինչև կատարեալ ռամկավարութիւնը սարեր ու ձորեր կան։

Սահմանադրական պետութիւնների մէջ կատարողական իշխանութիւնը ամբողջապէս գտնւում է միապետի ձեռքում։ Նա է, որ նշանակում է մինիստրներ, նա է, որ հրաժարեցնում է նրանց։ Ճիշտ է մինիստրները պատասխանատու են ժողովրդական ներկայացուցիչների առաջ, բայց յաճախ այդ պատասխանատուութիւնը այնքան է սահմանափակւում, որ մինիստրները միմիայն պատասխաններ են տալիս պարլամենտի հարցապնդումներին։ Այսպէս, օրինակի համար, Գերմանիայում կայսերական կանցլէրը և մինիստրները նշանակւում են կայսրի ձեռքով և երբէք պարտաւոր չեն հրաժարական տալ կամ հեռանալ, երբ ռայխստագը անվստահութիւն է յայտնում նրանց։ Այլ կերպ է բանը Ագլիայում։ Այնտեղ ժողովուրդը ձեռք է բերել մի այնպիսի կարգ, որտեղ մինիստրութիւնը պէտք է կազմւի պարլամեն-

տէրութիւնների միապետը, որը այլևս չունի այնքան ոյժ, որ կարողանար բռնակալ դառնալ և ունևոր դասակարգերի գլխին նստել· բայց որը դեռ էլի ունի այնքան ոյժ, որով կարող է խեղդել ու փշրել բանւորական յեղափոխութեան ամեն տեսակ ձգտումներ, բուրժուազիայի և բանւոր դասակարգի միջև եղած ընդհարման դէպքում—ահա այդ միապետը մի տեսակ նախապաշտպանող պարիսպ է բուրժուազիայի համար, որով նա յոյս ունի կազմակերպւած պրօլետարիատի թափ ու յարձակումից ազատւելու։

## IV

Ֆրանսիայում, Շվէյցարիայում և Հիւսիսային-Ամերիկական Միացեալ Շտատներում մենք հանդիպում ենք կառավարութեան երրորդ, ճիշտ է, դեռ և լաւ չը զարգացած ձևի,—հասարակապետութեան· դա կառավարութեան մի այնպիսի ձև է, որում ռամկավարութիւնը մտցրւած է ամենահետևողական կերպով։ Այս նոր ձևի կատարեալ զարգացման ժամանակ ժողովուրդն է օրէնք դնում, ժողովուրդն է կառավարում, ժողովուրդն է դատում։ Միայն ու միայն նրանից է բղխում ամեն մի իշխանութիւն, մի միայն նա է երկրի տէրը։ Հակառակ միապետութեան բոլոր տեսակներին, այդտեղ ամենևին չկայ որևէ դինաստիայի ձեռքին գտնւող ժառանգական իշխանութեան իրաւունք, այդ տեղ չկայ ոչ մի իշխանութիւն, որ չբղխէր ժողովրդի կամքից։ Ճշմարիտ է, համարեա բոլոր հասարակապետութիւնների մէջ ժողովուրդը իր ընտրեալների ձեռքով ազգի ներկայացուցչութիւնը յանձնում է քաղաքացիներից մէկին (նախագահին), սակայն նախագահի իշխանութիւնը ոչ մի բանով նման չէ միապետի իշխանութեանը։ Նա ըն-

տրւում է միայն մի որոշ ժամանակով և կարող է փոխւել ու դատի ենթարկւել (ինչպէս այժմ Ֆրանսիայում—պետական դաւաճանութեան համար) ժողովրդական ներկայացուցիչների որոշմամբ։ Օրէնքների մշակման ժամանակ նա ոչ մի իշխանութիւն չունի և ամեն բանում միայն պարլամենտի կամքն է կատարում։ Կատարողական իշխանութեան գլուխ համարւելով հանդերձ, նա շատ անգամ միայն բաւականանում է պարլամենտի մեծամասնութիւնից մինիստրներ նշանակելով և ժողովրդի կողմից անմիջապէս կամ նրա ներկայացուցիչների ձեռքով ընդունւած օրէնքներ հրատարակելով։ Միայն Հիւսիսային—Ամերիկական Միացեալ Նահանգներում է, որ նախագահը կատարողական իշխանութեան իսկական գլուխն է հաշւում և մինիստրութիւններ ընտրելիս կատարելապէս անկախ է. այս հանգամանքը, անկասկած, խստիւ սահմանափակում է ժողովրդի կամքն ու իրաւունքը. բայց սա մի բացառութիւն է և ուրիշ ոչինչ։ Ֆրանսիայի և Շվէյցարիայի նախագահները այդպիսի անկախութիւն չեն վայելում։

Ինքնակալ ժողովուրդը ինչպէս է ի կատար ածում իր իրաւունքները։ Սկսենք օրէնսդրութիւնից։ Հասարակապետութեան օրէնքները հրատարակւում են կամ անմիջապէս ժողովրդի և կամ պարլամենտ կազմող ներկայացուցիչների ձեռքով։ Առաջին դէպքում առաջարկւած օրինագծի թեր կամ դէմ քւէարկում է ամբողջ ժողովուրդը, և եթէ օրինագիծը ստանում է ձայների մեծամասնութիւն, այն ժամանակ նա օրէնք է դառնում։ Հակառակ դէպքում մերժւում է։ Մինչև մի որևէ օրինագիծ քւէարկութեան կենթարկւի, նա երկար ժամանակ քննադատւում է լրագիրներում և հասարակական ժողովներում, այնպէս

*որ ամբողջ ժողովուրդը մանրամասնօրէն ծանօթանում է օրինագծի թէ հակառակորդների և թէ կողմնակիցների կարծիքների հետ։ Ձայնատուութեան այս ձևը կոչւում է րէֆէրէնդում։ Րէֆէրէնդումին ենթարկւում են կամ բոլոր նոր օրէնքները կամ նրանցից մի քանիսը, մի որոշ թւով քաղաքացիների կամ օրէնսդրական ժողովարանի պահանջմամբ։ Րէֆէրէնդումը ժողովրդական օրէնսդրութեան դեռ հազւադէպ ձև է. ներկայումս նա լայն կերպով տարածւած է միմիայն Շվէյցարիայում։*

*Սակայն, ինչպէս կուզէ տարածւի րէֆէրէնդումը, (ուղղակի ժողովրդական օրէնսդրութեան կատարեալ ձևը), նա չէ կարող պարլամենտի տեղը բռնել։ Կեանքը առաջ է բերում այնքան նոր ու բարդ խնդիրներ, որ նրանց անհնար է վճռել ամբողջ ժողովրդի անմիջական ձայնատւութեամբ։ Սա շատ կը դանդաղեցնէր օրէնսդրութեան ընթացքը և շատ դէպքերում դժւար կը լինէր պարզ ու որոշ վճիռներ տալ։ Ռամկավարական հասարակապետութեան մէջ պարլամենտը ընտրւում է ընդհանուր, հաւասար, ուղղակի և գաղտնի ընտրողական իրաւունքի հիման վրայ, այսինքն ամեն մի չափահաս քաղաքացի անկախ թէ դաւանանքից և թէ կայքային ցենզից՝ իրաւունք ունի պատգամաւորներ ընտրելու. պատգամաւորները ընտրւում են անմիջապէս ժողովրդի և ոչ թէ լիազօրների ձեռքով (ինչպէս, օրինակ, մեր Պետական Դումայում), որի ժամանակ ամեն տեսակ ճնշում վերացնելու համար ապահովւում է ձայնատւութեան կատարեալ գաղտնիքը։ Այժմեան հասարակապետութիւններից և ոչ մէկում (բացի Նոր Զելանդիայից և մի քանի Ամերիկական շտատներից) հետևողական կերպով չէ մտցրւած ընտրութիւնների ընդհանրութեան սկզբունքը,*

այսպէս, օրինակի համար, Ֆրանսիայում, Հիւս.-Ամերիկական Միացեալ Նահանգներում և Շվէյցարիայում բոլոր կանայք զրկուած են ընտրողական իրաւունքից. Ֆրանսիայում ձայնի իրաւունք չունի նա, ով վերջին 6 ամսի ընթացքում մի որոշ տեղ չէ մնացել և այլն։ Կան և ուրիշ սրանց նման սահմանափակումներ, որոնք շարունակում են յարատեել բուրժուական դասակարգերի ջանք ու ճիգով ռամկավարութիւնը աղճատելու նպատակով։ Իսկական ռամկավարական կազմում դէպի որը ձգտում են բոլոր բանւորական կուսակցութիւնները ընդհանրութեան սկզբունքը ընտրութիւնների ժամանակ պէտք է լիովին արտայայտուի։ Ամեն մի չափահաս քաղաքացի կամ քաղաքացուհի՝ առանց ազգութեան, կրօնի, կայքային հարստութեան, պաշտօնական դրութեան, տեղակեցութեան... խտրութեան պէտք է երկրի պետական կեանքում մասնակցելու և օրէնսդրական ժողովարանի պատգամաւորներ ընտրելու իրաւունք ունենայ։ Ամեն մի, թէկուզ առաջին հայեացքից չնչին շեղումն ընտրութեան ընդհանրութեան սկզբունքից հազարաւոր քաղաքացիների, մանաւանդ ազգաբնակութեան չքաւոր դասակարգերից, զրկում է քաղաքական իրաւունքներից։

Ներկայիս հասարակապետութիւնների մէջ, ինչպէս և սահմանադրական միապետութիւններում, ընդհանուր, հաւասար և ուղղակի ձայնատուութեամբ ընտրուած ժողովարանի ներկայացուցիչների պալատի կողքին, բուրժուազիան յաջողեցրել է և մի երկրորդ պալատ հաստատել (այսպէս ասած սենատ), որը գլխաւորապէս կազմւում է ունևոր դասակարգերից։ Այսպէս, օրինակ, Ֆրանսիայում սենատորը ընտրւում է ոչ թէ ժողովրդի կողմից, այլ առանձին շրջանային յանձնաժողովներից, ուր մտնում են այդ շրջանի

պարլամենտական պատգամաւորները և քաղաքային ու միւս տեղական ինքնավար մարմինների ներկայացուցիչները։

Իսկ որովհետև դրանց մեծ մասը «հին մարդիկ» են ունևոր դասակարգերից, ուստի հասկանալի է որ սենատը—անմիջապէս ժողովրդի ձեռքով ընտրուած պատգամաւորների պալատի համեմատութեամբ—ունևոր դասակարգերի շահեր պաշտպանող հիմնարկութիւն է։ Երկրորդ պալատը խոչընդոտ է հանդիսանում առհասարակ այն բոլոր դէպքերում, երբ ժողովրդական ներկայացուցիչների պալատը ռամկավարական տարրերի ճնշմամբ ձեռնամուխ է լինում այս կամ այն վճռական րէֆորմների։ Ռամկավարական հասարակապետութեան մէջ երկրորդ պալատի գոյութիւնը կատարեալ անմտութիւն է, և նրա դէմ վճռականապէս մաքառում են ռամկավարութեան բոլոր ճշմարիտ կողմնակիցները։ Պարլամենտը պէտք է բաղկացած լինի մի պալատից և ամբողջ իշխանութիւնը իր ձեռքում ունենայ։

Օրինագծեր առաջարկելու կամ գոյութիւն ունեցող օրէնքների մէջ հարկաւոր փոփոխութիւններ մտցնելու իրաւունքը պետական կազմակերպութեան վերոյիշեալ ձևի ժամանակ վերապահուած է թէ քաղաքացիներին և թէ օրէնսդրական ժողովի պատգամաւորներին։ Իւրաքանչիւր օրինագիծ քննւում է պարլամենտում, և եթէ յօգուտ նրա ձայն է տալիս մեծամասնութիւնը, այն ժամանակ օրէնքի ոյժ է ստանում։ Նրանց հրատարակում է նախագահը որոշ ժամանակամիջոցում. պէտք է ասել, որ վերջինս իրաւունք ունի պարլամենտին առաջարկել զանազան ուղղումներ մտցնել նրա մէջ, սակայն երբէք իրաւունք չունի պարլամենտից ընդունուած օրէնքը հաստատելու կամ մեր-

ժելու։ Եթէ պարլամենտը նախագահի առաջարկած ուղղումները մերժէ, այդ դէպքում նախագահը պարտաւոր է սահմանադրութեան մէջ որոշուած ժամանակամիջոցում օրէնքը հրատարակել։ Այսպիսով, ընդդէմ միահեծան միապետութիւնների, որոնց մէջ ամբողջ օրէնսդրական իշխանութիւնը գտնւում է միապետների ձեռքում, հասարակապետութեան մէջ նա գտնւում է ժողովրդական ներկայացուցիչների ձեռքում։ Պարլամենտը ոչ միայն օրէնքներ է հրատարակում, այլև հսկում է դրանց ճշգրիտ կատարման վրայ։ Պարլամենտի պատգամաւորներից կազմւած մինիստրական կաբինէտը կատարողական օրգան է համարւում։ Այդ մինիստրութիւնը ժողովրդական ներկայացուցիչների առաջ պատասխանատու է իր ամեն մի քայլի համար և պէտք է բացատրութիւն տայ այն բոլոր գործերի մասին, որոնց համար հարցապնդում է լինում պատգամաւորների կողմից։ Պարլամենտի մեծամասնութեան հետ ունեցած առաջին ընդհարման դէպքում, նա պէտք է հրաժարական տայ։ Եթէ մեծամասնութիւնը իրան կողմը չունենայ, մինիստրութիւնը մի օր չէ կարող իշխանութեան գլուխը մնալ։ Ի հարկէ, մինիստրը պատասխանատու է ոչ միայն իրան, այլ բոլոր ստորադրեալների արարքների համար։ Այստեղ արդէն չի կարող լինել չինովնիկների այն անպատիժ ինքնիշխանութիւնը, որ կայ միահեծանութեան մէջ. լայն հրապարակայնութեան շնորհիւ իսկոյն կբացւին մութ արարքները, հեռագիրը րոպէապէս այդ մասին կը հաղորդէ պարլամենտին, շահագրգռւած պատգամաւորները իսկոյն և եթ բացատրութիւն կը պահանջեն համապատասխան մինիստրից, և ժողովրդի կոխկըրտւած իրաւունքը կը վերականգնւի։ Հասկանալի է, որ կատարողական իշխանութեան այսպիսի կազմա-

վերպութեան ժամանակ նոյն իսկ խօսք չէ կարող լինել մինիստրների կամ միւս բարձր պաշտօնեաների կողմից հրատարակւող զանազան շրջաբերականների մասին, որոնք ոչնչացնում են կամ լրացնում օրէնքը։ Մինիստրների կաբինէտը պէտք է կառավարէ ժողովրդական ներկայացուցիչների կամքի համաձայն։

Այդտեղ դատարանն էլ ժողովրդի ձեռքին է գտնւում։ Ընտրովի դատաւորներ, երդւեալների դատարան, վերջապէս, ժողովրդական ներկայացուցիչներից կազմւած բարձրագոյն դատարան—ահա արդարադատութեան կազմակերպութիւնը կառավարութեան հանրապետական ձևի մէջ։ Բոլորը հաւասար են օրէնքի առաջ, չըկայ և չի կարող լինել առանձին դատարան գիւղացիների համար, առանձին—ունևոր դասակարգերի համար և առանձին—չինովնիկների համար։ Պէտք է լինի մի հատ ընդհանուր դատարան, բոլորովին անկախ վարչութիւնից և սերտ կապւած ժողովրդի հետ։ Այդպիսի դատարանը կարող է գոյութիւն ունենալ մի այնպիսի կազմում, որտեղ ժողովրդից չըբղխող իշխանութիւն չըկայ։

Պետական կազմի այս ձևը քաղաքական իրաւունքների հետ միասին ազգաբնակութեանը երաշխաւորում է նաև քաղաքացիական բոլոր ազատութիւնները։ Նա ճանաչում է ժողովների և ընկերակցութիւնների լիակատար ազատութիւն, ազատութիւն մամուլի և խօսքի, ազատութիւն ցոյցերի, անձի անձեռնմխելիութիւն, տեղափոխութեան ազատութիւն, ազատութիւն խղճի, հաւասարութիւն օրէնքի առաջ, պարտադիր—ձրի ուսուցում և այլն և այլն։ Նա լայն ճանապարհ է բանում ժողովրդի առաջ, որպէսզի վերջինս ազատօրէն կարողանայ կռիւ մղել լաւագոյն ապագայի համար։

Նա յօգուտ ամբողջ ժողովրդի է, որովհետև երկրի լիակատար տէր է դարձնում նրան, նա ասում է, որ ժողովուրդը ինքը պէտք է վճռէ իր բաղդը։ Նա յօգուտ պրօլետարիատի, յօգուտ քաղաքային և գիւղական չքաւորութեան է, որովհետև նրանց լիուլի հնարաւորութիւն է տալիս կազմակերպւելու և լաւագոյն ապագայի համար ազատօրէն կռւելու։ Դասակարգային շահերի պաշտպանութեան համար նա հզօր գործիք է տալիս նրանց ձեռքը, և այդ գործիքը քաղաքական իշխանութիւնն է։ Նա թոյլատրում է ազատ կռիւ մղել իշխանութիւն ձեռք բերելու համար, և այնտեղ, ուր բանւոր դասակարգը ձեռք է բերել կառավարութեան յիշեալ ձևը, նա կարողացել է ազատօրէն օգտւել նրանից, այդ իշխանութեանը վերջնականապէս տիրելու համար, որպէսզի դրանով բարեփոխի ամբողջ հասարակական կազմը իսկական հաւասարութեան և ազատութեան հիմքերի վրայ և հասնի կօլլեկտիվիզմի։ Նըրանից վախում են միայն նրանք, որոնք շահագրգռւած են ժողովրդի իրաւազրկութեան և նրա իշխանութեան կրճատման մէջ։ Ի հարկէ, դրանց թւից չէ բանւոր դասակարգը։